ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻՆ ԱՌԸՆԹԵՐ
ՄԱՇՏՈՑԻ ԱՆՎԱՆ ՀԻՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ—«ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ»

ԲԱՆԲԵՐ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻ

ԵՐԵՎԱՆ № 9 1969

ՄԱՐՏԻՐՈՍ ՄԻՆԱՍՅԱՆ

# ՄԵՅԵԻ ԴԻՏՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՓԱՐՊԵՑՈՒ ԹՂԹԻ ԵՎ ԵՂԻՇԵԻ ԵՐՐՈՐԴ ԳԼԽԻ ՎԵՐԱԲԵՐՅԱԼ

*Երևանի Գրականության և արվեստի թանգարանը ճանաչված բանասեր Հ. Պերպերյանի ջանքերով 1965 թ. Փարիզից ստացավ Մեյեի նյութերի մի ծրար: Դրանց մեջ գտանք քարտեր, որոնց վրա նա 1903 թվականից առաջ նշել է Ղ. Փարպեցու Թուղթ առ Վահան Մամիկոնեան-ի և Եղիշեի Վասն Վարդանայ և Հայոց պատերազմին երկի Գ գլխի բնագրերի վերաբերյալ դիտողություններ: Սրանք մնացել են անտիպ. այստեղ ներկայացնում ենք դրանցից ամենահետաքրքրականները, որոնք, ինչպես համոզվեցինք, իրենց արժեքը չեն կորցրել նույնիսկ այդ երկու պատմագիրների համահավաք հրատարակությունների առկայության դեպքում:*

* * *

*Դասական գրաբարի քերականության իր երկու գրքերով[1] և հայ լեզվաբանության վերաբերող բազմաթիվ հոդվածներով Մեյեն հայագիտության մեջ շատ ավելի հայտնի է որպես հռչակավոր հայագետ լեզվաբան, քան բանասեր կամ բնագրագետ, մինչդեռ նա բանասիրական հոդվածներ ունի Եղիշեի և Ագաթանգեղոսի պատմությունների, Եզնիկի փիլիսոփայական երկի, Աստվածաշնչի հայերեն թարգմանության վերաբերյալ և այլն: Նա եվրոպացի այն հայագետներից է, որոնք սիրել են մեր ձեռագիր մատենագրությունը և դրանից քաղել լեզվաբանական ու բանասիրական ուսումնասիրությունների նյութեր[2]: Մեյեն հայերեն ձեռագրեր ընթերցել է Փարիզի ազգային գրադարանում, Վիեննայի և Վենետիկի Մխիթարյան միաբանությունների մատենադարաններում, էջմիածնի վանքում, ուր նա գիտական նպատակներով այցելել է 1891 և 1903 թթ.:*

*1891 թ. Մեյեն, առաջին անգամ լինելով, մի քանի ամսով եղավ Թիֆլիսում և էջմիածնում՝ արդի հայերեն խոսել սովորելու (որը նրան մասամբ միայն հաջողվեց այդ կարճ ժամանակամիջոցում), էջմիածնի մատենադարանում հա-*

---

[1] Esquisse d'une grammaire comparée de l'arménien classique (*Դասական հայերենի համեմատական քերականության ուրվագիծ*), *Վիեննա, 1902.* Altarmenisches Elementarbuch (*Հին հայերենի տարրական դասագիրք*), *Հայդելբերգ, 1913:*

[2] Observations sur la graphie de quelques anciens manuscrits de l'évangéliaire arménien (*Դիտողություններ հայերեն ավետարանի մի քանի հին ձեռագրերի գրության վերաբերյալ,* Journal Asiatique, 1903, 10e série, *հտ. Բ, էջ 487—507*) *և* De quelques évangéliaires arméniens accentués (*Շեշտադրված հայերեն մի քանի ավետարանագրքերի մասին, 1905 թ.*) *ընդարձակ հոդվածները հիմնված են, ինչպես գրում է ինքը հեղինակը, 1903 թ. էջմիածնի մատենադարանում նրա ուսումնասիրած ձեռագրերի վրա:*

յերեն ձեռագրեր ընթերցելու և Աշտարակ գյուղի բարբառն ուսումնասիրելու համար: Այն ժամանակ նա կարդացել է Ղազար Փարպեցու հայտնի Թուղթն առ Վահան Մամիկոնյան: Նա հետաքրքրական և ուսանելի շատ բան է գտել հայերեն ձեռագրերում: Սակայն մի քանի օր ընթերցելուց հետո նա գանգատվել է. «Ձեռագրերից չեմ քաղում այն բոլորը, ինչ սպասում էի: Դրանք շատ հին չեն, և դրանց ներկայացրած ուղղագրական առանձնահատկություններն այնքան շատ չեն, որքան ցանկանում եմ»[3]: Մեյեն ընդհանրապես դժգոհ է մնացել այս առաջին գործուղման ժամանակ իր ձեռք բերած գիտական արդյունքներից և առանձին հոդվածում չի ամփոփել դրանք: Այնուհանդերձ մենք հետաքրքրական որոշ բան գտանք այն ժամանակ նրա կատարած գրառումների մեջ, որոնք վերաբերում են Փարպեցու Թղթի բնագրին: Նա թողել է նաև անտիպ դիտողություններ Եղիշեի բնագրի որոշ տողերի վերաբերյալ: Նախ՝ առաջինի մասին:

Մեյեն լրիվ համեմատել է Փարպեցու Թղթի վենետիկյան երկրորդ հրատարակությունը (1873 թ.) էջմիածնի մատենադարանի № 611 (այժմ Մաշտոցյան մատենադարանի № 2639) ձեռագրի հետ, էջ 477ա—486ա: 9 թերթիկների վրա Մեյեն նշել է, տպագրի բաղդատությամբ, ձեռագրի համարյա բոլոր տարընթերցվածները, ջնջված կամ այլ գրչով ավելացված տառերն ու բառերը, ձեռագրի և հրատարակության որոշ հատվածների եռևառաջությունը:

Մեյեի համեմատության արդյունքների և Թղթի գիտական հրատարակության մեր բաղդատությունից պարզվեց, որ նրա նկատած մի շարք այլընթերցվածներ արտացոլված չեն կամ նույնիսկ սխալ են մեջ բերված Ստ. Մալխասյանցի և Գ. Տեր-Մկրտչյանի կազմած գիտական բնագրի այլընթերցվածների բաժնում: Ստորև ներկայացնում ենք դրանցից մի քանիսը:

| Փարպեցու Թղթի 2-րդ հրատ. | Ձեռագիր հմր. 2639 (Մեյեի նշումները) | Գիտակ. հրատ. այլընթերցվածներ |
|---|---|---|
| էջ 570 որդի | սրտի | էջ 187 տ. 16 սրդի |
| » Հոռոմս | հոռմս | 187 տ. 20 չիք |
| 572 անուշ | անոյշ | 188 տ. 12 չիք |
| 573 ի փոքրիկ | ի փոքիկ | 188 տ. 30 չիք |
| 576 զընտանիս | զընդանիս | 189 տ. 33 չիք |

Գիտական բնագրի էջ 190-ում կարդում ենք. «Ղազար ասէ, թե պոռնկութիւն մեղք չեն. զայն և մարզպանին ասացէ: **Եւ Եթէ ընդէ՞ր** այդ այդպէս՝ դու, տէր, բաց գիտես քան զսուտ կարծողսն»: Ինչպես նկատել է Մեյեն, ձեռագիրն ունի **Եւ թէ էր** մեր այստեղ ընդգծած բառերի փոխարեն: Կարծում ենք, որ կարելի է ձեռագրի ընթերցվածը համարել ճիշտ և իմաստի տեսակետից հարմար, **Էր**-ը հասկանալով ոչ թե **ընդէ՞ր**=ինչո՞ւ, այլ որպես **Եմ** բայի հարցական ձևը, այսինքն՝ և միթե՞ դա այդպես էր. դո՛ւ, տե՛ր, ավելի լավ գիտես, քան սուտ կարծողները, բամբասողները կամ սխալմամբ այդպես կարծողները: Վահան Մամիկոնյանը չգիտեր անշուշտ, թե ինչո՞ւ է դա այդպես, այսինքն՝ ինչո՞ւ են

3 Անտուան Մեյե, Նամակներ Թիֆլիսից և Հայաստանից, 1891 թ., հունիսի 15-ի նամակից: Այս հետաքրքրական նամակների բնագրերը և մեքենագրված օրինակը (130 էջ) պահվում են Տիկ. Մեյեի մոտ. նա բարյացակամորեն մեզ հնարավորություն ընձեռեց հանելու դրանց լուսանկար պատճենները: Դրանց հայերեն թարգմանությունը, անհրաժեշտ լուսաբանումների հետ միասին, պատրաստել ենք հրատարակության:

սուտ մեղքեր բարդում Փարպեցու վրա, որը հենց դրա պատճառն է բացատրում մարզպանին, կամ այդ մասին նրան տեղեկացնում իր նամակում։ Ընդհակառակն՝ Փարպեցին ավելի քան համոզված է, որ մարզպանը հավատ չի ընծայում այդ բանին և երբեք չի հավատա, որ այդ այդպես է, այն է՝ երբ Ղազարն ասում է, թե պոռնկությունը մեղք չէ, և թե նույն սուտ խրատն է տալիս մարզպանին։ Մեր մեջ բերած տողերին անմիջապես հաջորդող պարբերության մեջ Փարպեցին շարունակում է ապացուցել, թե ոչ էր այդ այդպես. «Արդ՝ ո՞ ոք յանօրինաց, թող թէ ի քրիստոնէից, ի միտս իւր խորհել զայսպիսի ինչ բան, թող թէ առ այլում զայսպիսի շշնչել բանս» և այլն (Գիտական հրատարակություն, էջ 190, տ. 7—14)։

| | | |
|---|---|---|
| էջ 577 դրդուեալ | դրդեալ | 190 տ. 16 չիք |
| 582 ակարամտութեանս | ակար մտութեանս | 192 տ. 11 չիք |
| 585 և ըստ անկարգ վարուց | և անկարգս վարուց | 193 տ. 9 չիք |
| 588 խուենն | խրեենն | 194 տ. 8 չիք |
| 595 կաթուղիկոսի | կաթողիկոսի | 197 տ. 28 չիք |
| 590 ընտանեաց | ընդանեաց | 195 տ. 21 չիք |
| 591 Գարդմանայ | գարդմանճայ | 196 տ. 13 » |
| 598 ո՞ւր | ուր | 199 տ. 2 » |
| 600 աղաղակէ | աղաղակէր | 199 տ. 18 » |
| 603 անյօդակապէս | անյաւղկապս | 200 տ. 22 չիք |

Այսուամենայնիվ Մեյեն դրվատանքով է գրախոսել այս քննական բնագիրը, նշելով հանդերձ դրա, ըստ իրեն, թերի կողմերը. «Հրատարակիչները խընամքով նշում են ձեռագրի այլընթերցվածները։ Նրանք շատ քիչ են ուղղում բնագիրը և երբեմն նույնիսկ առանց ուղղման են թողնում միանգամայն անհասկանալի հատվածներ։ Կարելի է ափսոսալ, որ նրանք սակավ-ինչ շատ են հետևել իրենց ձեռագրի ուղղագրությանը, որն այս նկատմամբ ոչ մի հեղինակություն չունի... Հրատարակությունն առաջին անգամ լինելով, տալիս է ձեռագրի հավաստի բնագիրը»[4]։ Ըստ այսմ էլ 1904 թվականից հետո Մեյեն իր հայագիտական հոդվածներում Փարպեցու վկայությունները քաղել է այս բնագրից։

* * *

Շատ ավելի հետաքրքրական և արժեքավոր են Մեյեի դիտողությունները Եղիշեի Վասն Վարդանայ և Հայոց պատերազմին գրքի 3-րդ եղանակի վերաբերյալ։

Մեյեն մեծ ուշադրությամբ և քննադատ բանասերի ոգով լրիվ համեմատել է նաև Եղիշեի երկի 1838 թվականի վենետիկյան և Խաչատուր Հովհաննիսյանի (Մոսկվա, 1892 թ.) հրատարակությունների 3-րդ գլուխը (գուցե և ավելի, սակայն պահպանված քարտերն այս գլխի մասին են)։ Վենետիկի հրատարակության տողատակում տրված են նաև որոշակի չմատնանշված ձեռագրերի այլըն-

[4] Revue Critique d'histoire et de littérature, 1904, էջ 459—460.

թերցվածները. Մեյեն նկատի է առել նաև դրանք, ձեռագրերը պայմանականորեն անվանելով x, y, z: Իսկ Խ. Հովհաննիսյանի հրատարակությունը կատարված է ըստ Անձևացյաց օրինակի, որ ըստ այսմ Մեյեն նշել է A տառով:

Մենք համոզված ենք, որ Մեյեի համեմատությունը կատարված է 1903 թվականից առաջ, Փարիզում, թեև նա ոչ մի տեղ չի նշել այդ: Այս թվականի մայիսի 10-ին, նույն տարվա ամռանը էջմիածին այցելելուց առաջ, նա Փարիզից գրել է Գալուստ Տեր-Մկրտչյանին. «Անպայման կգամ էջմիածին: Սակայն ուզում եմ լավ օգտագործել այն երեք շաբաթները, որ անց եմ կացնելու այնտեղ: Նախ՝ ծրագրել էի պատրաստել Եղիշեի քննական հրատարակությունը, բայց «Պատմագիրք Հայոց» մատենաշարի ազդն ինձ բնականաբար հրաժարել տվեց դրանից»[5]: Մեյեն իրոք վերջնականապես հրաժարվել է, ափսո՜ս, այդ մտադրությունից. սակայն նրա թողած անտիպ նշումները վկայում են, որ նա լուրջ և համակողմանիորեն էր նախապատրաստում դրա իրագործումը: Այսպես՝ մի թղթի վրա, որ վերնագրված է «Եղիշեի աղբյուրները», կարդում ենք (ֆրանսերեն). «Մոգերի երկար բացատրությունը, էջ 48, տ. 22 և շար., պետք է փոխ առնված լինի այն նույն աղբյուրից, ինչ որ Բ եղանակում մազդեական ուսմունքի շարադրանքը» և այլն. հետագայում Մեյեն առանձին հոդվածում ընդարձակ շարադրել է այս միտքը[6]: Մի քարտի վրա նշված է. «Եղիշեի ձեռագրի մասին տե՛ս Հանդէս Ամսօրեայ, 1902, հոկտեմբեր». դա Գր. Տեր-Պողոսյանի «Նկատողություններ Եղիշեի պատմության վերաբերյալ» հոդվածն է: Շատ ավելի կարևոր է հետևյալ նշումը. «Գիրք Գ[7], հայերի նամակը Թեոդոս կայսրին կարծես ինչ-որ հին գրքի ամփոփումն է: Վերջավորությունը շատ կարճ է, որպեսզի նամակը բնագիր մի վավերագիր ներկայացնի: Մյուս կողմից՝ նկատելի է, որ այդ նամակում բացակայում է Գրիգոր Լուսավորչի անունը: Այստեղ մենք ունենք Հայաստանի քրիստոնեություն ընդունելու մասին ճուճարեն մի հին գրքի ամփոփումը»: Եվ իրոք, այս նամակում հիշատակված չէ Հայաստանի քրիստոնյա լուսավորչի անունը. Տրդատ թագավորի համար են ասված նամակի հետևյալ տողերը. «Նախնին մեր Տրդատիոս յիշելով զառաջին սէրն ձեր, որ ի տղայութեան փախուցեալ ի հայրասպան մարդախողխող հօրեղբարցն իւրոց՝ ապրեալ անաւ յերկրիդ Յունաց, և ի ձէնջ թագաւորեալ տիրէր հայրենի աշխարհիս, սոյնպէս և զճառատան որ ի Քրիստոս՝ ընկալ ալ ի սուրբ էպիսկոպոսապետէն Հռովմայ, լուսավորեաց զհիւսարային կողմանս ճիւսիսոյ»[8]: Ի դեպ, նամակում ունենք Տրդատիոս ձևը, և Մեյեն իր քարտերից մեկում նշել է. «Նկատե՛լ անվան հունական ձևը»:

---

[5] Մաշտոցյան մատենադարան, Գ. Տեր-Մկրտչյանի արխիվ:

[6] Մեյեն իր ուսումնասիրություններից եկնելով՝ երկու համառոտ հոդված է հրատարակել Եղիշեի Պատմությունից վերցված երկու հարցի վերաբերյալ. 1. Notice sur un passage de l'historien arménien Elisée (Ծանոթություն հայ պատմագիր Եղիշեի մի հատվածի մասին, Journal Asiatique, հտ. ԺԹ, 1902, էջ 548—549. Նույնի ամփոփումը հայերեն՝ Բանասէր, 1902, էջ 141). 2. Sur un passage d'Elisée (Եղիշեի մի հատվածի մասին, Revue des Etudes Arméniennes, հտ. 2, 1926, էջ 1—3): Հայ լեզվաբանության վերաբերող իր հոդվածներում Մեյեն բնագրային վկայություններ քաղել է նաև Եղիշեից՝ նրա շարահյուսությունը համարելով բուն հայկական:

[7] Եղիշեի Վասն Վարդանայ և հայոց պատերազմին, Երևան, 1957, էջ 71 տ. 20:

[8] Անդ, էջ 72 տ. 6—11:

Բաղդատության միջոցին Մեյեն հաճախ շատ համառոտ գրի է առել իր դիտողությունը երկու տպագրությունների և x, y, z ձեռագրերի այլընթերցվածներից շատերի մասին՝ պատճառաբանելով մեկի կամ մյուսի ճշտությունը կամ անճշտությունը, իրեն ոչ ճիշտ թվացող ընթերցվածի առաջացման հավանական պատճառը կամ ուղին, որևէ ընթերցվածի ընդունելի, անընդունելի, վերանայելի կամ գոնե ծանոթության մեջ նշելի լինելը։

Պրոֆ. Ե. Տեր-Մինասյանի գիտական հրատարակության հետ մենք համեմատեցինք Մեյեի նշումները (մեր առաջ ունենալով նաև անշուշտ նրա օգտագործած երկու տպագրությունները)։ Պարզվեց, որ իր ձեռքի տակ ունենալով Եղիշեի միայն երկու տպագրություն՝ նա շատ անգամ կարողացել է որոշել, թե երկու այլընթերցվածներից ո՛րը պետք է ճիշտ կամ մատենագրինը համարել։ Իսկ հաճախ էլ չընդունելով երկու տպագրությունների բնագիրը՝ նա առաջարկել է այն ուղղել այս կամ այն կերպ։ Գիտական հրատարակությունն իր բնագրով և բազմաթիվ ձեռագրերի այլընթերցվածներով այսօր ցույց է տալիս, որ Մեյեն երկու դեպքում էլ ճիշտ է լուծել հարցերը։ Բերենք մի քանի օրինակ։

**Ընթերցվածի ընտրություն.** ըստ քննական հրատարակության (էջ 66 տող 20) **գրէր և կնքէր զհրամանն և կապէր զաւետարանէն** նախադասության մեջ Խ. Հովհաննիսյանի հրատարակությունը (ըստ Անձևացյաց օրինակի) և x, y, z ձեռագրերն ունեն **գրէր**, իսկ V (վենետիկյան նշված հրատարակությունն) ունի **դնէր**. Մեյեն նկատել է. «V-ի ընթերցվածը համարյա անիմաստ է». և սա ճիշտ է։ Կամ՝ գիտ. հրատ. էջ 67 տող 16, **Ոչ երևէր այնուհետև առաւել տէր քան զծառայ**, V **տէր**, A **տէրն**. Մեյե՝ «Հոդը բավականին անսպասելի է այստեղ». և սա նույնպես ճիշտ է։

**Աղավաղված ընթերցվածների ուղղում.** VA **ընդե՞ր ոչ զայդ ամենայն հաստատեաւ յանդիման չասացեր զթագաւորն** (A **թագաւորին**) նախադասության մեջ մեր ընդգծած ժխտականների մասին Մեյեն նշել է. «Երկու բնագրերն էլ ունեն **չասացեր**: Ջնջել չ-ն, որը կրկնակի է կիրառվել և հակառակ է լեզվի սովորույթին. Հմմտ. օրինակ՝ սրան հար և նման հատվածը՝ **ընդէ՞ր ոչ մեծապէս հոգ տարար յանձն քո**[9]. չ-ն այստեղ ինչ-որ գրչի ավելացում է»։ Մեյեն ճիշտ է նկատել, որ այստեղ ժխտական երկու մասնիկներից մեկն ավելորդ է դասական գրաբարի քերականության համաձայն, և գիտական հրատարակության մեջ կարդում ենք գոնե «**ընդէ՞ր զայդ ամենայն... չասացեր**» (62.7—8)։

Երբեմն էլ Մեյեն կարողացել է ճիշտ մեկնաբանել իր օգտագործած երկու տպագրությունների տարօրինակ թվացող բնագիրը։ Ահա դրա մի օրինակը. AV 49 տ. 10, Գիտ. հրատ. 60 տ. 7—8 **Նոքա ևս քան զևս աճեցին և բազմացան, և հասին մինչև յաշխարհն Քուշանաց, և անտի ի հարաւակողմն մինչ ի Հնդիկս տարածեցաւ.** Մեյե՝ «**Տարածեցաւ**— նախորդող և հաջորդող բայերը (աճեցին... համարձակք էին) հոգնակի են և վերաբերում են քրիստոնյաներին, որոնք այստեղ նշված չեն. **տարածեցաւ**-ն անշուշտ վերաբերում է քրիստոնեական ուսմունքին։ Գոնե ծանոթության մեջ առաջարկել **տարածեցան** ուղղումը»։ Ոչ մի ձեռագիր չունի Մեյեի առաջարկելիք ուղղումը, որը, կարծում ենք, ավելորդ է։ Համենայն դեպս նա ճիշտ է ըմբռնել բնագիրը. և իրոք, Ե. Տեր-Մինասյանն այս նախադասությունը թարգմանելիս քառակուսի փակագծերում ավելացրել է «[քրիստոնեությունը] տարածվեց», (Երևան, 1958, էջ 57)։

---

[9] Տե՛ս քննակ. հրատ. էջ 62 տ. 10։

Սակայն այս բոլորից շատ ավելի կարևոր է այն, որ Եղիշեի գիտական հրատարակության առկայության դեպքում ևս Մեյեի շատ դիտողություններ արժեքավոր են մեր մատենագրի հնագարյան բնագրի մի մասը հնարավորին չափ ճիշտ վերականգնելու համար: Ստորև ներկայացնում ենք դրանցից միայն ամենահետաքրքրականները, առաջբերելով պրոֆ. Ե. Տեր-Մինասյանի կազմած բնագիրը (որ նշում ենք ԵՏ տառերով) և ձեռագրային այլընթերցվածները:

1. V 47. 16 կանաց առնականաց — A կանանց առնականանց — Մեյե՝ «Ճիշտ է երկրորդ ձևը». — ԵՏ 58.2 կանանց առնականաց, երեք ձեռագիր և երկու տպագիր՝ առնականանց: Չալըխյան — Այտընյան Քերականություն (էջ 26), ՆՀԲ և Առձեռն՝ առնականանց:

2. V 48.29, A ԵՏ 59. 16—18 Ոչ ինչ խնայէին սոքա ի նոսա սաստկմամբ՝ ոչ միայն զարտաքինն, այլ և յեղբարս և յորդիս և յամենայն մերձաւորս իւրեանց, նաև ոչ յանձինս իւրեանց.—Մեյե՝ «զարտաքինն-ը ուղղե՛լ յարտաքինն բառ ի նոսա, յեղբարս և այլն ձևերի: Ակնհայտ ուղղում»: Ինչպես տեսնում ենք, ԵՏ ունի զարտաքինն, իսկ երկու ձեռագիր՝ յօտարս: Կարծում ենք, որ Մեյեի առաջարկած ուղղումը ճիշտ է. զարտաքինն-ը պետք է դիտել ոչ թե որպես սաստկմամբ բայանվան մեջ առկա բայիմաստի ուղիղ խնդիրը, այլ խնայէին ստորոգյալինը, ինչպիսին են Մեյեի մատնանշած մյուս խնդիրները՝ յեղբարս, յորդիս, յամենայն մերձաւորս... յանձինս: Նկատենք, որ երկու ձեռագրի յօտարս ընթերցվածը, փոխ. յարտաքինն, նույնպես ի նախդրով հայցական է, թեպետ այլ բառ:

3. V 50.20, A ԵՏ 61.17... այս որ ես ինձէն աչօք տեսի... մեծագոյն ևս լինի բան զառաջինն.— Մեյե՝ «զոր, և ոչ թե որ»: Քերականորեն այստեղ իրոք պետք է զոր որպես տեսի ստորոգյալի ուղիղ խնդիր՝ դերանվամբ արտահայտված. Հինգ ձեռագիր ունեն զոր ուղիղ ընթերցվածը:

4. V 52.24, A ԵՏ 64.1—3... յերկարէր գնուազն ուրախութեան, մաշելով զերկայնութիւն գիշերացն յերգս արբեցութեան և ի կաքաւս լկտութեան, բաղդրացուցանէր ոմանց զկարգս երաժշտական և զերգս հեթանոսականս.— Մեյե՝ «կարգս՛ երաժշտականս. հմմտ. անդ, հեթանոսականս»: Մեյեի դիտողությունը ճիշտ է, թեկուզ համարանությամբ, թեև ոչ մի ձեռագիր չունի այն: Սակայն ութ ձեռագիր ամբողջովին չունեն «երաժշտական և զերգս», երկու ձեռագիր չունեն «երաժշտական և զերգս հեթանոսականս» ընթերցվածները, որոնք, կամ ավելի ճիշտ՝ «երաժշտականս և զերգս» բառերն ընդմիջարկություններ են, և յավագույնն այստեղ Դ ձեռագրի բնագիրն է՝ «բաղդրացուցանէր ոմանց զկարգս հեթանոսաց» (կամ հեթանոսականս, որ նույն իմաստն ունի): Եվ իրոք, ամբողջ գիշերը հարբեցության երգերով և զվարճանքով անցկացնող քրիստոնյաների համար մարզպանը բաղդրացնում էր ոչ թե «զկարգս երաժշտականս և զերգս հեթանոսականս», այլ՝ «զկարգս հեթանոսականս»:

5. V 54.12, ԵՏ 66.1—3 Իսկ մի ոմն նախարարացն, որ անդր դիպեցաւ, էր ի նոցա խորհրդի, և ոչ միաբանեաց ընդ նոսա... բարկոծեցաւ և ահ մեծ անկաւ...— Մեյե՝ «[Ընդգծվածը] համարյա ակնհայտ ընդմիջարկություն է. լրիվ անհամաձայնության մեջ է կողքի բառերի հետ, ուստի և անօգուտ է (դրանք) իմաստի տեսակետից»: Ուրիշ ձեռագրեր ունեն «էր ի Վասակայ խորհրդին — որ էր ի նորա խորհրդի»:

6. A V 54.32, ԵՏ 66.15 Իսկ զմարզպանն ձերբակալ արարեալ, և միաբանէր ընդ նոսա երդմամբ.— Մեյե՝ «Չեմ հասկանում իսկ զմարզպանն... կառուց-

*վածքը։ Գուցե կարդանք* մարզպանն, *ուղղական. բայց սա հայերե՞ն է»։ Եվ իրոք, սա բավականին տարօրինակ կառուցվածք է գերբայական դարձվածով։ Մեկ ձեռագիր ունի* մարզպանն, *ուղղական հոլով, որ միանգամայն հասկանալի կլիներ որպես ենթակա* ձերբակալ առարեալ *գերբայական դարձվածի. վերջինս այս դեպքում կստանար կրավորական իմաստ և անհարիր չէր լինի* միաբանէր *ստորոգյալին, որի ենթական* մարզպանն *ձևն է։*

*7. V 55.29, A ԵՏ 67.23—26 Ընկեցեալ կայր այնուհետև ոսկի, և ոչ* ոք առնոյր իւր առանձինն արծաթ, *և արհամարհեալ առանց ագահութեան, անարգեալ պատուական հանդերձք առ ի զարդս մեծարանաց.— Մեյե՝ «[Ընդգծված] արտահայտությունը ընդհատում է ընդհանուր նախադասության կառուցվածքը. անհնար է շարունակել, եթե* արհամարհեալ-ը *նույնպես չի վերաբերում* կայր-*ին, գոնե անուղղակիորեն։ Բացի այդ, թվում է, որ այս նախադասությունն ընդմիջարկություն է. դրա իմաստի կրկնությունն է* նա իւրաքանչիւր... *տ. 3 և շար.», այսինքն՝* նա՝ իւրաքանչիւր ստացուածք ոչ ինչ համարէին յաչս ստացողաց իւրեանց: *Ինչպես նկատելի է, Մեյեն առաջարկում է կարդալ* ընկեցեալ կայր այնուհետև ոսկի... և արհամարհեալ *[կայր ոսկի]. Ե. Տեր-Մինասյանի թարգմանության մեջ (էջ 63)* արհամարհեալ-*ը վերաբերում է, ինչպես* անարգեալ-*ը,* պատուական հանդերձք-*ին, այսինքն՝ «...արհամարհված, անարգված էին զարդարանքի ու մեծարանքի համար հատկացված պատվական հագուստները»։ Ըստ համահավաք բնագրի՝ չկա ձեռագիր, որ չունենա վերևում ընդգծված հատվածը։*

*8. V 57.29, A ԵՏ 70.2* բերդացն պարիսպքն— x, y... բերդիցն— *Մեյեն կրկնակի ընդգծելով* բերդիցն *ձևը՝ ավելացրել է. «Տե՛ս V 65.25* բերդիցն» *[ԵՏ 68.16* բերդիցն—*Մ. Մ.], և այս վերջին ընթերցվածի մասին փակագծում նշել է. «Անտարակույս սա է ճիշտ ընթերցվածը»։ Եվ իրոք, մի քանի ձեռագիր ունեն այս ձևը. մատենագիրը երկու ձևերից հավանաբար կիրառել է մեկը. Առձեռն և ՆՀԲ բառարաններում* բերդ *գոյականի թեք ձևերն են՝* -ի *կամ* -աւ, -ից, -իւք:

*9. V 59.17, ԵՏ 71.20—22 Յովսէփ եպիսկոպոս բազում եպիսկոպոսակցօք իմովք և ամենայն* զօրօք *Հայոց, Վասակ մարզպան և Ներշապուհ Ռմբոսեան հանդերձ ասպարապետաւս և ամենայն մեծամեծ նախարարօքս...— Մեյեն* զօրօք *ընթերցվածի կողքին նշել է. «Ակնհայտ սխալ, որ հետևանք է նախորդող* եպիսկոպոսակցօք *ձևի. իրականում մատենագիրն հակադրում է աշխարհական և եկեղեցական իշխանությունները». ըստ այսմ էլ քանի որ «Յովսէփ եպիսկոպոս»-ը ուղղական հոլով է գրված, նույն հոլով պետք է գրվի նաև «զօրք»-ը, ինչպես ունեն վեց ձեռագիր և երկու տպագիր։*

*10. V 57.27, ԵՏ 72.3* ...ի սահմանացն Սէիրայ *(A* Սերայ)*—Մեյե՝ «երկրորդ ընթերցվածն է լավը»։ Եվ իրոք, Ե. Տեր-Մինասյանը բնագրում ընդունելով հանդերձ «Սէիրայ» ձևը, թարգմանության մեջ գրել է «Սերայի սահմաններից...» (էջ 67). բազմաթիվ ձեռագրեր և երկու տպագիր ունեն «Սերայց, Սերայ, Սեերիա»։*

*11. Շատ հետաքրքրական է Մեյեի դիտողությունը հետևյալ հատվածի մասին. «Եւ թագաւորէ փոխանակ նորա Մարկիանոս կայսր, և ի ձեռն վատթար արանց խրատուց իւրոց ծառայից, Անատոլեայ՝ որ սպարապետն էր, և Եղփարիոս ասորի, երկոքեան անարգք և վատթար արանց, միանգամայն և անաստուածք, ի նոցա բանս եկեալ թագաւորն, ոչ կամէր... (V 60.28 և շար., ԵՏ*

73.5—8)… Վասն այսորիկ փութացաւ արձակեալ դեսպանս առ թագաւորն Պարսից զնոյն Եղփարիոսն» (ԵՏ 73.12—13)։ Մեյեն գտնում է, որ բնագիրն այստեղ աղավաղված է, և նա բերում է ապացույցներ, որոնք ինքնին դարձյալ դիտողություններ են այդ տողերի առանձին բառերի և անճշտությունների վերաբերյալ. «Բնագիրն անպայման խանգարված է և ունի մեկնաբանող ընդմիջարկություններ, որոնք գալիս են անտարակույս Ղ. Փարպեցուց (էջ 126.16, վենետ. 1-ին հրատ. [Քննակ. հրատ. էջ 73.3—9 Մ. Մ.]։ Նախադասության կառուցվածքը անկարելի է ընդունել (խառն են ուղղականն ու սեռականը)[10]։ Անատոլեայ (A Անատոլեայ) հատուկ անունը նույն ձևն ունի, ինչ որ Ղ. Փարպեցու մոտ [10ա], հակառակ էջ 5 տ. 19 Անատող-ի[11]. սպարապետ կոչումը, փոխանակ սպարապետ Անտիոքայ (Փարպեցի)[12] կամ սպարապետ արեւելից (Եղիշէ, էջ 5. 20)[13], իրոք ցույց է տալիս բնագրի կրճատում։— Եղփարիոս (V Եփղարիոս) ձևը չի համաձայնում Փարպեցու Փղորենտի-ին[14]. A-ն ունի Փղորենտիոս (այս անունը փնտրել հույների մոտ)։— էջ 61, տ. 4-ում[15] ունենք այս անունը և նույն փոփոխությունը. զնոյն Փղորենտիոսն ձևը մեկնություն-ընդմիջարկություն է, և չեմ հասկանում, թե ինչպե՞ս կարելի է հաշտեցնել եզակի անունը դեսպանս հոգնակիի հետ[16]։— Տող 29 վատթար արանց, հմմտ. տ. 27 ! !։ Անտարակույս Անատոլեայ… [որ սպարապետն էր, և Եղփարիոս ասորի, երկոքեան անարգք և վատթար արանց. միանգամայն և] անաստուածք-ը մի երկար ընդմիջարկություն է, որին պետք է ավելացնել նաև զնոյն Եղփարիոսն, էջ 61.4»[17]։

12. V 62.32 և շար., ԵՏ 75.17—19 Անցանէր բաւանդակէր ամենայն զօրօք իւրովք. ռազմ արարեալ զբոլոր մեծութիւն դաշտին ի ներքս փակէր. զինեալք և վառեալք ամենայն պատրաստութեամբ ի մարտ պատերազմի ընդդէմ գնդին Հայոց։— Մեյե՝ «Զինեալք… վերջավորությունն անհնար է նախադասության կառուցվածքի տեսակետից և ակնհայտորեն փոփոխված է»։ Մեկ ձեռագիր և մեկ տպագիր ունեն զինեալ և վառեալ, որ տրամաբանական է՝ վերաբերելով անցանէր ստորոգյալի ենթակային։

---

[10] Մեզ միանգամայն ճիշտ է թվում Մեյեի այս դիտողությունը. բնագրում այդ ուղղական և սեռական հոլովներով ձևերն են՝ «ի ձեռն վատթար արանց խրատտուաց իւրոց ծառայից, Անատոլեայ… Եղփարիոս ասորի» (որ անհարիր է նախորդ սեռականներին), «երկոքեան անարգք և վատթար արանց, միանգամայն անաստուածք, ի նոցա բանս…»։

[10ա] Մեջ բերված տողերին նախորդող հատվածի վերաբերյալ Մեյեն իր քարտերից մեկում այն միտքն է արտահայտել, թե շարադրանքի մեջ Ղ. Փարպեցու և Եղիշեի մոտ մեծ նմանություններ կան, որոնք ենթադրել են տալիս մի ընդհանուր աղբյուր։ Հայ բանասիրության մեջ վիճարկված հարց է Եղիշեի՝ Փարպեցու Պատմությունից օգտվելու հանգամանքը։

[11] Եղիշե, քննակ. հրատ., էջ 7.9 Անատոլ։

[12] Ղ. Փարպեցի, քննակ. հրատ., 74. 7—8 սպարապետ Անտիոքայ։

[13] Եղիշե, քննակ. հրատ., էջ 7.10։

[14] Ղ. Փարպեցի, քննակ. հրատ., էջ 74.8։ Երկու մատենագիրների ո՞ր մեկի բնագիրն է արդյոք ճիշտ այս հարցում։

[15] Եղիշե, Ն. տ., էջ 73.13։

[16] Եղիշե, Ն. տ., էջ 73.13 տե՛ս վերևում Եղիշեից մեջ բերված տողերը։ Մեյեի դիտողությունը միանգամայն տրամաբանական է. ինը ձեռագիր և մեկ տպագիր ունեն դեսպան եզակի ձևը, որ համապատասխանում է զնոյն Եղփարիոսն եզակիին, եթե վերջինս ընդմիջարկություն չէ. հակառակ դեպքում դեսպանս հոգնակին տեղին է։

[17] Եղիշե, քննակ հրատ., էջ 73.13։

*13. V 68.7 և շար., ԵՏ 81.23—25 Եւ իբրև զայս ամենայն բովանդակ ցուցին նմա, միաբան լինէր ամբաստանութիւն երկոցունց կողմանցն՝ զառաքինեացն և զկեաս կացելոցն*[18]. *որպէս զուր և տարապարտուց նեղեաց զնոսա [ԵՏ էջ 82.1—5] ի հայրենի օրինացն յետս կալ, և զխորհրդութիւն ապստամբին Վասակայ, որպէս Հայոց բանիւ խաբեաց զթագաւորն, յանձն առնուլ զմոգութիւն. իբրև չէր ուրուք ընդ նմա բանս եդեալ, նա յանձնէ սուտակասպաս լինէր։*

*Իբրև լուաւ զայս իմացուցին, արձակեցին զնա հրեշտակութեամբ...— Մեյեն այս տողերի մասին գրել է. «Նախադասությունը երկար է. այն պետք է հասնել հետևյալ կերպ, դուրս գցելով մեկնություն-ընդմիջարկությունները և վերականգնելով ուղիղ բնագիրը»։ Ու նա գրի է առել իր վերականգնած բնագիրը. «Եւ իբրև զայս ամենայն բովանդակ ցուցին նմա*[19], *(զ)միաբան* (ձեռ. *միաբան*) [*լինէր*][20] *ամբաստանութիւն զերկոցունց* (x, y, z. AV *երկոցունց*) *կողմանցն՝ զառաքինեացն* (A *չիք* զ) *և զկեաս* (A *չիք* զ) *կացելոցն*[21]. *որպէս զուր և տարապարտուց նեղեցան* (A—նեղեաց զնոսա. *գուցե և հարկավոր է պահպանել այս*)*ի հայրենի օրինացն յետս կալ, և զխորհրդութիւն ապստամբին Վասակայ, որպէս Հայոց բանիւ խաբեաց զթագաւորն, յանձն առնուլ զմոգութիւն. [իբրև չէր ուրուք ընդ նման բանս եդեալ, նա յանձնէ սուտակասպաս լինէր]. իբրև լուաւ զայս ամենայն իմացուցին, արձակեցին զնա հրեշտակութեամբ...»։ Մեյեն ավելացրել է. «Երկու բան են ցույց տալիս պատմիրակին՝ միաբան ամբաստանությունը և Վասակի կեղծիքը. այնուհետև նրան ուղարկում են: Էական ուղղումն այն է, որ* միաբան-*ի վրա պետք է ավելացնել* զ *նախդիրը և ջնջել* լինէր-*ը.* միաբան-*ի* զ-*ի անկումը եղել է անշուշտ մեկնաբանման այն սխալի, որով խանգարվել է ամբողջ նախադասությունը. դրանից առաջ է եկել* լինէր *ընդմիջարկությունը, և ամեն ինչ դարձել է անհասկանալի»։ Կարծում ենք, որ Մեյեի վերականգնված բնագիրը շատ ավելի հստակ է, քան համահավաքը։*

*14. V 69.26, ԵՏ 83.14—15 ...որ նստէր* ի *մեծ* գաւթոյս *յայսմ.— Մեյեն՝ «Ներգոյականի համար (ի)* գաւթոյ *ընթերցվածն ուղիղ չէ։ Ուրիշ ձեռագրեր, ըստ* V-*ի, ունեն* (ի)գաւթս *և* (ի)գաւիթս: *Ո՞րն ընդունել»։ Համահավաք բնագրում կարդում ենք* ի գաւթոյս. *ըստ ՆՀԲ և Աճառյան բառարանների՝* գաւիթ *գոյականի թեք ձևերն են* -ու *կամ* -ոյ, -ուց. *և* -ի, -ից: *Ուստի այստեղ ճիշտ կլիներ* ի գաւթի *կամ, հավանաբար,* ի գաւթ:

*15. V 72.29, ԵՏ 86.24—87.1—2 Որպէս զի չիք յանիրաւութենէ արդարութիւն,* այսպէս և ոչ *(V չիք և ոչ)ի սուտութենէ ճշմարտութիւն, սոյնպէս և ի խաւարէ մտաց՝ ակնկալութիւն խաղաղութեան.— Մեյեն գտնում է, որ մեր ընդ-*

---

18 *Անկախ Մեյեի դիտողությունից և նրա առաջարկած ուղղումներից նշենք, որ* (զ)առաքինեացն և (զ)կեաս կացելոցն *սեռականները փոխանուն սեռականներ են. ըստ այսմ դրանք չպետք է ընդունած լինեին* զ *նախդիր, քանի որ դրանց ներառած հատկացյալը՝* ամբաստանութիւն, *ուղղական հոլով է։ Այս այսպես է, եթե ընդունում ենք համահավաք բնագրի ընթերցվածքը. սակայն ստորև կտեսնենք, որ Մեյեն վերականգնում է նախադասությունը և բացատրում* զ-*ի անհրաժեշտությունը դրանում։*

19 *Պարսիկ գերիներից մեկին։*

20 *Քառակուսի փակագծերի մեջ առնված բառերը Մեյեն առաջարկում է հանել բնագրից որպես ընդմիջարկություն։*

21 *Տե՛ս ծանոթ. 18. ըստ Մեյեի խմբագրմանը՝* զառաքինեացն *և* զկեաս կացելոցն *փոխանուն սեռականները քերականորեն ճիշտ կերպով են ընդունել* զ *նախդիրը որպես ուղիղ խնդիրներ* ցուցին *ստորոգյալի. դրանք այս դեպքում ներառել են* զմիաբան ամբաստանութիւն *հատկացյալը, որը նույնպես ուղիղ խնդիր է նույն ստորոգյալի։*

ցված և ոչ-ը ավելորդ է. «և ոչ-ը, որ ավելացված է A-ում, խախտում է նախադասության համաչափությունը, որն ունի երեք մաս նույն պլանի վրա, և ոչ թե համեմատություն, ինչպես ցույց է տալիս և ոչ-ը. սոյնպէս-ով ներմուծված 3-րդ մասը ոչ մի կասկած չի թողնում»: Տասնչորս ձեռագիր չունեն այս և ոչ-ը, իսկ ինը ձեռագիր՝ այսպէս-ը. և իրոք, առանց դրանց էլ նախադասությունը միանգամայն կանոնավոր կառուցվածք կունենար և կնշանակեր. «ինչպես որ անիրավությունից արդարություն չկա, ստությունից՝ ճշմարտություն, նմանապես խռովասեր մտքից՝ խաղաղության ակնկալություն»: Նախադասության առաջին երկու մասերում առածները իմաստաբանական հիմք են ծառայում, որպեսզի հայերը չհավատան Հազկերտի թողության կամ ներման հրովարտակին, Եղիշեի բառերով՝ խռովասեր մտքի խաղաղությանը:

* * *

*Մեյեի այս դիտողությունները հրատարակության պատրաստելիս մենք առաջնորդվել ենք նրա հետևյալ սկզբունքով, որ նա հաճախ է կրկնել իր գրախոսականներում. «Իմ նպատակը միշտ էլ եղել է բանավեճեր հարուցել»:*

М. П. МИНАСЯН

## ЗАМЕЧАНИЯ МЕЙЕ О «ПОСЛАНИИ» ПАРПЕЦИ И ТРЕТЬЕЙ ГЛАВЕ «ИСТОРИИ» ЕГИШЕ

**Резюме**

От известного французского арменоведа А. Мейе остался ряд филологических заметок о текстах «Послания» Лазаря Парпеци и «Истории» Егише.

В данной статье автор сопоставляет эти замечания с научно-критическими текстами вышеупомянутых историков, отмечает научную ценность работы Мейе для уточнения отдельных разделов этих памятников V века.

M. P. MINASSIAN

## REMARQUES INEDITES DE MEILLET SUR LES TEXTES DES HISTORIENS ARMENIENS LAZARE DE P'ARPI ET ELISEE

En 1965, Mme Meillet a fait envoyer à Erévan de nombreuses notes de son mari qui sont conservées au Musée Littéraire et Artistique d'Erévan. L'auteur de l'article a trouvé des remarques inédites, personnelles, sur le texte de la „Lettre de Lazare de P'arpi à Vahan Mamikonian" et sur le troisième chapitre de „L'Histoire de Vardan et de la guerre des Arméniens" d'Elisée. En présentant plusieurs de ces remarques et les comparant aux éditions critiques des deux historiens, l'auteur montre l'importance du travail de collation accomplie par Meillet, pour une meilleure lecture des passages en question.